ավելի վաղ և, մի անկյուն քաշված՝ հասարակ մարդու պես զրուցում է, ամենասովորական կերպով զրուցում է կոնֆերենցիայի ամենասովորական պատվիրակների հետ։ Չեմ ծածկի, վոր այդ բանն ինձ այն ժամանակ վորոշ անհրաժեշտ կանոնների վորոշ խախտում թվաց։

Միայն հետագայում յես հասկացա, վոր Լենինի այդ պարզությունն ու համեստությունը, աննկատելի մնալու կամ, համենայն դեպս, աչքի չզարնելու և իր բարձր դիրքը չշեշտելու այդ ձգտումը,— այդ գիծը Լենինի ամենաուժեղ կողմերից մեկն է, իբրև նոր մասսաների, մարդկության ամենախոր «ներքնախավերի» պարզ ու սովորական մասսաների նոր առաջնորդի։

## ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՈՒԺԸ

Այդ կոնֆերենցիայում յերևելի եյին Լենինի արտասանած յերկու ճառերը՝ ընթացիկ մոմենտի և ագրարային հարցի մասին։ Դրանք, դժբախտաբար, չեն պահպանվել։ Դրանք վոգեշունչ ճառեր եյին, վոր բուռն խանդավառությամբ համակեցին ամբողջ կոնֆերենցիային։ Համոզման



անսովոր ուժը, հասարակ ու պարզ փաստարկումը, կարճ ու ամենին հասկանալի ֆրազները, ցուցամոլության բացակայությունը, գլխապտույտ ժեստերի և տպավորություն գործելու ձգտող եֆեկտավոր ֆրազների բացակայությունը,— այդ ամենը Լենինի ճառերը նպաստավոր կերպով տարբերում եր սովորական «պառլամենտական» հռետորների ճառերից։

Բայց ինձ այն ժամանակ Լենինի ճառերի այդ կողմը չեր հմայում։ Ինձ հմայում եր Լենինի ճառերի մեջ տրամաբանության այն անդիմադրելի ուժը, վորը մի քիչ չոր է, բայց դրա փոխարեն հիմնավորապես համակում է լսարանը, աստիճանաբար ելեկտրականացնում նրան և հետո, ինչպես ասում են, գերի վերցնում առանց մնացորդի։ Յես հիշում եմ, թե ինչպես այն ժամանակ պատվիրակներից շատերն ասում եյին. «Լենինի ճառերի մեջ տրամաբանությունը ինչ-վոր ամենազոր շոշափուկներ են, վորոնք քեզ չորս կողմից աքցանի պես ցանցում են և վորոնց գրկից դուրս պրծնելու ուժ չկա. կա՛մ անձնատուր յեղիր, կա՛մ վճռիր լիովին խորտակվել»։

Յես կարծում եմ, վոր Լենինի ճառերի

մեջ այդ առանձնահատկությունը նրա հռետորական արվեստի ամենաուժեղ կողմն ե:

## ԱՌԱՆՑ ՆՎՆՎԱԼՈՒ

Յերկրորդ անգամ յես Լենինին հանդիպեցի 1906 թ. մեր կուսակցության Ստոկհոլմի համագումարում: Հայտնի յե, վոր այդ համագումարում բոլշևիկները փոքրամասնություն կազմեցին, պարտություն կրեցին: Յես այդ ժամանակ Լենինին առաջին անգամն եյի տեսնում պարտվածի դերում: Նա մազաչափ անգամ նման չեր այն առաջնորդներին, վորոնք պարտությունից հետո նվնվում և վհատվում են. Ընդհակառակը, պարտությունը Լենինին դարձրել եր խտացած յեռանդ, վոր իր կողմնակիցներին վոգևորում ե նոր մարտերի, ապագա հաղթանակի համար: Յես խոսում եմ Լենինի պարտության մասին: Բայց այդ ինչ պարտություն եր վոր: Պետք եր նայել Լենինի հակառակորդներին, Ստոկհոլմի համագումարի հաղթողներին՝ Պլեխանովին, Ակսելրոդին, Մարտովին և ուրիշներին. նրանք շատ քիչ եյին



նման խակական հաղթողների, վորովհետև Լենինը մինչև իսկ իր անխնա քննադատության մեջ նրանց վրա, ինչպես ասում են, վողջ տեղ չեր թողել: Յես հիշում եմ, ինչպես մենք, բոլշևիկ պատվիրակներս, իրար գլխի հավաքված, նայում եյինք Լենինին, խորհուրդ հարցնելով նրանից: Միքանի պատվիրակների ճառերում յերևում եր հոգնածություն, վհատություն: Միտս ե, թե ինչպես Լենինը նման խոսքերին իբրև պատասխան ատամների արանքից կծու կերպով ասաց. «Մի՛ նվնվաք, ընկերնե՛ր, մենք անշուշտ կհաղթենք, վորովհետև մենք իրավացի յենք»: Ատելություն դեպի նվնվացող ինտելիգենտները, վստահություն իր ուժերին, հավատ հաղթանակին— ահա թե ինչի մասին եր խոսում մեզ հետ այն ժամանակ Լենինը: Զգում եյիր, վոր բոլշևիկների պարտությունը ժամանակավոր ե, վոր բոլշևիկները պետք ե հաղթեն մոտիկ ապագայում:

«Չնվնվալ պարտության առթիվ»— այդ՝ Լենինի գործունեության մեջ հենց այն առանձնահատկությունն ե, վորը նրան ոգնում եր իր շուրջը մինչև վերջը անձնվեր և

իր ուժերին հավատացող բանակ համախմբելու:

## ԱՌԱՆՑ ՊԱՐԾԵՆԿՈՏՈՒԹՅԱՆ

Հետևյալ համագումարում, 1907 թ. Լոնդոնում բոլշևիկները հաղթող դուրս եկան: Ցես այն ժամանակ Լենինին առաջին անգամն եյի տեսնում հաղթողի դերում: Սովորաբար հաղթությունը պղտորում է առաջնորդներից վոմանց գլուխները, նրանց դարձնում է գոռոզ և պարծենկոտ: Նման դեպքերում ամենից հաճախ սկսում են հաղթանակ տոնել, դափնիների վրա հանգստանալ: Բայց Լենինը մազաչափ անգամ նման չեր այդպիսի առաջնորդներին: Ընդհակառակը, հենց հաղթությունից հետո նա դառնում եր առանձնապես զգոն և աչալուրջ: Միտս է, թե ինչպես Լենինն այն ժամանակ համառորեն ներշնչում եր պատվիրակներին՝ «առաջին գործն է՝ հաղթանակով չտարվել և չմեծամտանալ. յերկրորդ գործն է՝ ամրացնել ձեռք բերված հաղթությունը. յերրորդն է՝ հակառակորդին ջախջախել մինչև վերջը, վորովհետև նա միայն ջարդված է, բայց



բնավ ամբողջովին ջախջախված»: Նա կծու կերպով ծաղրում եր այն պատվիրակներին, վորոնք թեթևամտորեն հավատացնում եյին, թե «այսուհետև մենշևիկների բանը պրծած է»: Նրա համար դժվար չեր ապացուցել, վոր մենշևիկները դեռևս արմատներ ունեն բանվորական շարժման մեջ, վոր նրանց դեմ պետք է շնորհքով պայքարել, ամեն կերպ խուսափելով իր ուժերը գերագնահատելուց և մանավանդ հակառակորդի ուժերը թերագնահատելուց:

«Հաղթանակով չպարծենալ»— այդ՝ Լենինի բնավորության մեջ հենց այն առանձնահատկությունն է, վորը նրան օգնում եր զգաստորեն կշռելու հակառակորդի ուժերը և կուսակցությունն ապահովագրելու հնարավոր անակնկալներից:

## ՍԿԶԲՈՒՆՔԱՅՆՈՒԹՅՈՒՆԸ

Կուսակցության առաջնորդները չեն կարող թանգ չհամարել իրենց կուսակցության մեծամասնության կարծիքը: Մեծամասնությունը այդ մի ուժ է, վոր չի կարող հաշվի չառնել առաջնորդը: Լենինն այդ

բանն ավելի վատ չէր համարում, քան կուսակցության վորևէ այլ առաջնորդ: Բայց Լենինը յերբեք չէր դառնում մեծամասնության գերին, մանավանդ յերբ այդ մեծամասնությունն իր տակ սկզբունքային հիմք չէր ունենում: Մեր կուսակցության պատմության մեջ մոմենտներ եյին լինում, յերբ հենց մեծամասնության կարծիքը կամ կուսակցության րոպեյական շահերը կոնֆլիկտի եյին բռնվում պրոլետարիատի արմատական շահերի հետ: Այդպիսի դեպքերում Լենինն, առանց յերկար մտածելու, վճռականորեն բռնում եր սկզբունքայնության կողմը՝ ընդդեմ կուսակցության մեծամասնության: Ավելին. նա այդպիսի դեպքերում չէր վախենում տառացիորեն մենակ դուրս գալու ամենքի դեմ, հույս դրած այն բանին,— ինչպես նա հաճախ ասում եր այդ մասին,— վոր «սկզբունքային քաղաքականությունը միակ ճիշտ քաղաքականությունն է»:

Այդ տեսակետից հատկապես բնորոշ են հետևյալ յերկու փաստերը:

Առաջին փաստ: 1909—1911 թ. թ. ժամանակաշրջանն եր, յերբ կուսակցությունը հակահեղափոխության կողմից ջարդված,



լիակատար քայքայման մեջ եր: Դա կուսակցության չհավատալու ժամանակաշրջանն եր, կուսակցությունից վո՛չ միայն ինտելիգենտների, այլև մասամբ բանվորների համատարած փախուստի ժամանակաշրջանը, ընդհատակը ժխտելու ժամանակաշրջանը, լիկվիդատորության ու փլուզման ժամանակաշրջանը: Այն ժամանակ վո՛չ միայն մենշևիկները, այլև բոլշևիկները մի ամբողջ շարք ֆրակցիաներ ու հոսանքներ եյին ներկայացնում, վորոնք մեծ մասամբ կտրված եյին բանվորական շարժումից: Հայտնի յե, վոր հենց այդ ժամանակաշրջանում ծագեց ընդհատակը լիովին լիկվիդացիայի յենթարկելու և բանվորներին լեգալ, ստոլիպինյան լիբերալ կուսակցության մեջ կազմակերպելու գաղափարը: Լենինն այն ժամանակ միակն եր, վոր չենթարկվեց տրամադրությունների ընդհանուր համաճարակին և բարձր եր պահում կուսակցականության դրոշը, զարմանալի համբերությամբ և չտեսնված համառությամբ հավաքելով կուսակցության բաժան-բաժան ու ջարդված ուժերը, կռվելով բոլոր և ամեն տեսակի հակակուսակցական հոսանքների դեմ բանվորական

չարժման ներսում, անհախընթաց արիությամբ և չտեսնված հաստատակամությամբ պաշտպանելով կուսակցականությունը:

Հայտնի յե, վոր կուսակցականության համար մղած այդ վեճում Լենինը հետո հաղթող դուրս յեկավ:

Յերկրորդ փաստ: 1914—1917 թ. թ. ժամանակաշրջանն եր, իմպերիալիստական պատերազմի յեռուն ժամանակաշրջանը, յերբ բոլոր կամ գրեթե բոլոր սոցիալ-դեմոկրատական և սոցիալիստական կուսակցությունները, ընդհանուր հայրենասիրական մոլուցքին յենթարկվելով, ծառայագրվեցին հայրենի իմպերիալիզմին: Այդ այն ժամանակաշրջանն եր, յերբ II Ինտերնացիոնալը կապիտալի առջև խոնարհեցրեց իր դրոշները, յերբ շովինիստական ալիքի առջև չդիմացան նույնիսկ այնպիսի մարդիկ, ինչպես Պլեխանովն ե, Կաուցկին, Գեդը և ուրիշները: Լենինն այն ժամանակ միակն եր կամ գրեթե միակը, վոր վճռական պայքար հայտարարեց սոցիալ-շովինիզմի և սոցիալ-պացիֆիզմի դեմ, մերկացնում եր Գեդերի ու Կաուցկիների դավաճանությունը և խարանում եր միջանկյալ «հեղափո-



խականների» կիսակատարությունը: Լենինը հասկանում եր, վոր ինքն իր հետևն ունի աննշան փոքրամասնություն, բայց այդ նրա համար վճռական նշանակություն չուներ, վորովհետև նա գիտեր, վոր միակ ճիշտ քաղաքականությունը, վորն ապագա ունի, հետևողական ինտերնացիոնալիզմի քաղաքականությունն ե, վորովհետև նա գիտեր, վոր սկզբունքային քաղաքականությունը միակ ճիշտ քաղաքականությունն ե:

Հայտնի յե, վոր նոր Ինտերնացիոնալի համար մղված այդ վեճի մեջ ևս Լենինը հաղթող դուրս յեկավ:

«Սկզբունքային քաղաքականությունը միակ ճիշտ քաղաքականությունն ե»— սա նույն այն ֆորմուլան ե, վորի ոգնությամբ Լենինը գրոհով վերցնում եր նոր «անառիկ» դիրքեր, հեղափոխական մարքսիզմի կողմը նվաճելով պրոլետարիատի լավագույն տարրերին:

## ՀԱՎԱՏ ԴԵՊԻ ՄԱՍՍԱՆԵՐԸ

Կուսակցությունների թեորետիկներն ու առաջնորդները, վորոնք գիտեն ժողո-

վուրդների պատմությունը, սերտել են հեղափոխությունների պատմությունը սկզբից մինչև վերջ, յերբեմն բռնված են լինում մի անվայելուչ հիվանդությամբ: Այդ հիվանդությունը կոչվում է վախ՝ մասսաներից, հավատի բացակայություն դեպի մասսաների ստեղծագործական ընդունակությունները: Այդ հողի վրա յերբեմն առաջ է գալիս առաջնորդների մի տեսակ արիստոկրատիզմ մասսաների վերաբերմամբ, վորոնք փորձ չունեն հեղափոխությունների պատմության մեջ, բայց կոչված են ջախջախելու հինը և կառուցելու նորը: Վախ, թե տարերքը կարող է մոլեգնել, թե մասսաները կարող են «շատ ավելորդ բան ջախջախել», մասսաներին գրքույկներով սովորեցնել ջանացող, բայց մասսաներից բան սովորել չկամեցող դայակի դեր խաղալու ցանկություն,—այս է այդ տեսակի արիստոկրատիզմի հիմքը:

Լենինն այդպիսի առաջնորդների լիակատար հակադրությունն եր: Յես չեմ ճանաչում մի ուրիշ հեղափոխական, վորն այնպես խորը հավատար պրոլետարիատի ստեղծագործական ուժերին և նրա դասակարգային բնազդի հեղափոխական նպա-



տակահարմարությանը, ինչպես Լենինը, Յես չեմ ճանաչում մի ուրիշ հեղափոխական, վորը կարողանար այնպես անխնա խարազանել «հեղափոխության քաոսի» և «մասսաների ինքնագլուխ գործողությունների վակխանալիայի» ինքնագոհ քննադատներին,— ինչպես Լենինը: Միտս է, ինչպես մի զրույցի ժամանակ, ի պատասխան ընկերներից մեկի նկատողության, թե «հեղափոխությունից հետո պետք է նորմալ կարգ սահմանվի», Լենինը սարկազմով նկատեց. «Դժբախտությունն է, յեթե հեղափոխականի հավակնություն ունեցող մարդիկ մոռանում են, վոր պատմության մեջ ամենից ավելի նորմալ կարգը հեղափոխության կարգն է»:

Այստեղից՝ Լենինի արհամարհական վերաբերմունքը դեպի այն բոլոր մարդիկ, վորոնք աշխատում եյին բարձրից նայել մասսաներին և նրանց սովորեցնել գրքույկներով: Այստեղից՝ Լենինի անդադրում քարոզը — սովորել մասսաներից, իմաստավորել նրանց գործողությունները, մանրամասն ուսումնասիրել մասսաների պայքարի պրակտիկ փորձը:

Հավատ մասսաների ստեղծագործական

ումերին — սա Լենինի գործունեության մեջ հենց այն առանձնահատկությունն է, վորը նրան հնարավորություն էր տալիս իմաստավորելու տարերքը և նրա շարժումը ուղղելու պրոլետարական հեղափոխության հունով:

## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՀԱՆՃԱՐԸ

Լենինը ծնված էր հեղափոխության համար: Նա իսկապես հեղափոխական պայթյունների հանճարը և հեղափոխական ղեկավարման մեծագույն վարպետն էր: Նա իրեն յերբեք այնպես ազատ և ուրախ չէր զգում, ինչպես հեղափոխական ցնցումների դարաշրջանում: Ես դրանով բնավ չեմ ուզում ասել, թե Լենինը միանման քաջալերում էր ամեն մի հեղափոխական ցնցում կամ թե նա միշտ և ամեն պայմաններում հեղափոխական պայթյունների կողմնակից էր: Ամենևին: Ես դրանով միայն ասել եմ ուզում, թե Լենինի հանճարեղ խորաթափանցությունը յերբեք այնպես լրիվ ու պարզորոշ չէր դրսևորվում, ինչպես հեղափոխական պայթյունների ժամանակ: Հեղափոխական շրջադարձերի ժամանակ նա



տառացիորեն փթթում էր, դառնում էր հստակատես, նախագուշակում էր դասակարգերի շարժումը և հեղափոխության հավանական զիգզագները, դրանք վոնց վոր ձեռքի ափի մեջ տեսնելով: Իզուր չէ, վոր մեր կուսակցական շրջաններում ասվում է, թե «Իլյիչը հեղափոխության ալիքների մեջ կարողանում է այնպես լողալ, ինչպես ձուկը ջրում»:

Այստեղից էլ՝ Լենինի տակտիկական լոզունգների «ապշեցուցիչ» պարզությունը և հեղափոխական մտահղացումների «գլխապտույտ» համարձակությունը:

Միտս են գալիս յերկու առանձնապես բնորոշ փաստեր, վորոնք նշում են Լենինի այդ առանձնահատկությունը:

Առաջին փաստ: Հոկտեմբերյան հեղաշրջումից առաջ յեղած ժամանակաշրջանն էր, յերբ միլիոնավոր բանվորներ, գյուղացիներ ու զինվորներ թիկունքի և ռազմաճակատի ճգնաժամից դրդված հաշտություն և ազատություն էյին պահանջում, յերբ գեներալիտետն ու բուրժուազիան զինվորական դիկտատուրա էյին նախապատրաստում «պատերազմ մինչև վախճան»-ի ոգտին, յերբ ամբողջ այսպես կոչված «հա-

սարակական կարծիքը», բոլոր այսպես կոչված «սոցիալիստական կուսակցությունները» բոլշևիկների դեմ եյին կանգնած, արհամարհանքով նրանց «գերմանական լրտեսներ» անվանելով, յերբ Կերենսկին փորձում եր ընդհատակ քշել—և մասամբ արդեն կարողացավ քշել—բոլշևիկների կուսակցությունը, յերբ ավստրո-գերմանական կոալիցիայի տակավին հզոր կարգապահ բանակները կանգնած եյին մեր հոգնած և քայքայվող բանակների դեմ, իսկ արևմտա-յեվրոպական «սոցիալիստները» բարեհաջող կերպով բլոկի մեջ եյին գտնվում իրենց կառավարությունների հետ հօգուտ «պատերազմի մինչև լիակատար հաղթանակ»...

Ի՞նչ եր նշանակում ապստամբություն բարձրացնել այդպիսի մոմենտում: Ապստամբություն բարձրացնել այդպիսի պարագայում՝ նշանակում ե ամեն ինչ ռիսկի յենթարկել: Բայց Լենինը ռիսկ անելուց չեր վախենում, վորովհետև գիտեր, իր պարզատես հայացքով տեսնում եր, վոր ապստամբությունն անխուսափելի յե, վոր ապստամբությունը կհաղթանակի, վոր ապստամբությունը Ռուսաստանում՝ կնա-



խապատրաստի իմպերիալիստական պատերազմի վերջը, վոր ապստամբությունը Ռուսաստանում՝ կալեկոծի Արևմուտքի բազմատանջ մասսաներին, վոր ապստամբությունը Ռուսաստանում՝ իմպերիալիստական պատերազմը կվերածի քաղաքացիական պատերազմի, վոր ապստամբությունը կտա Խորհուրդների հանրապետություն, վոր Խորհուրդների հանրապետությունն ամբողջ աշխարհում հեղափոխական շարժման պատվար կծառայի:

Հայտնի յե, վոր Լենինի այդ հեղափոխական կանխատեսումը հետագայում կատարվեց չտեսնված ճշտությամբ:

Յերկրորդ փաստ: Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո առաջին օրերն եյին, յերբ Ժողովրդական Կոմիսարների Խորհուրդը փորձում եր խռովարար գեներալին, գլխավոր հրամանատար Դուխոնինին հարկադրել, վոր դադարեցնի ռազմական գործողությունները և զինադադարի մասին բանակցություններ սկսի գերմանացիների հետ: Միտս ե, ինչպես Լենինը, Կռիլենկոն (ապագա գլխավոր հրամանատարը) և յես մեկնեցինք Գլխավոր շտաբը Պիտերում, հեռախոսի մոտ՝ Դուխոնինի հետ բանակ-

ցելու: Սարսեցուցիչ րոպե յեր: Դուխոնինը և Կայանը կատեգորիկ կերպով հրաժարվեցին ժողկոմխորհի հրամանը կատարելուց: Բանակի հրամանատարական կազմն ամբողջությամբ Կայանի ձեռքին եր: Ինչ վերաբերում ե զինվորներին, ապա անհայտ եր, թե ինչ կասի 12-միլիոնանոց բանակը, վոր յենթարկված եր այսպես կոչված բանակային կազմակերպություններին, վորոնք Խորհրդային իշխանության դեմ եյին տրամադրված: Պիտերի մեջ հենց, ինչպես հայտնի յե, այն ժամանակ հասունանում եր յունկերների ապստամբությունը: Բացի այդ, Կերենսկին պատերազմի յեր գնում Պիտերի վրա: Միտս ե, թե ինչպես հեռախոսի մոտ փոքրիկ լռությունից հետո Լենինի դեմքը ինչ-վոր անսովոր լույսով փայլեց: Նկատելի յեր, վոր նա արդեն վորոշում ե ընդունել: «Գնանք ռադիոկայան,— ասաց Լենինը,— նա մեզ ոգուտ կտա. մենք հատուկ հրամանով պաշտոնանկ կանենք գեներալ Դուխոնինին, նրա տեղը գլխավոր հրամանատար կնշանակենք ընկ. Կռիլենկոյին և հրամանատարական կազմի գլխի վրայով զինվորներին կդիմենք մի կոչով՝ շրջապատել գեներալներին, դադարեցնել



ռազմական գործողությունները, կապվել ավստրո-գերմանական զինվորների հետ և հաշտության գործը վերցնել իրենց սեփական ձեռքը»:

Դա մի «թռիչք եր դեպի անհայտություն»: Բայց Լենինը չեր վախենում այդ «թռիչքից», ընդհակառակը դրան ընդառաջ եր գնում, վորովհետև գիտեր, վոր բանակը հաշտություն ե ցանկանում, և նա կնվաճի հաշտությունը, հաշտության ճանապարհից սրբելով բոլոր և ամեն տեսակի խոչընդոտները, վորովհետև նա գիտեր, վոր հաշտություն հաստատելու այդպիսի յեղանակը դուր չի անցնի ավստրո-գերմանական զինվորների համար, վոր դա առանց բացառության բոլոր ռազմաճակատներում կառաջացնի հաշտության ձգտումը:

Հայտնի յե, վոր Լենինի այդ հեղափոխական կանխատեսությունն ել հետագայում կատարվեց ամենայն ճշտությամբ:

Հանճարեղ խորաթափանցություն, վերահաս դեպքերի ներքին իմաստն արագորեն ըմբռնելու և գուշակելու ընդունակություն—այդ՝ Լենինի հենց այն հատկու-

թյունն է, վորը հեղափոխական շրջադարձերում նրան ոգնում էր նշելու ճիշտ ստրատեգիա և հաստատ վարքագիծ:



## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՓԱՍՏԱԹՂԹԵՐԸ

Ստորև տպագրվում են Վլադիմիր Իլյիչի վեց փաստաթղթերը և նրա լրացրած հարցաթերթը (անկետան): Լենինի փաստաթղթերի մեջ հրապարակվում են քաղաքացիական պատերազմի շրջանի չորս հեռագրեր, նաև Արդարադատության ժողկոմ Կուրսկուն — 1922 թվի մարտի 18-ին և 1922 թվի հոկտեմբերի 6-ին Պոլիտբյուրո ուղարկված յերկտողը:

1919 թվի հունվարի 2 կամ 3 թվակիր առաջին հեռագիրն ամբողջությամբ գրված է ընկեր Ստալինի կողմից, ստորագրությունը Լենինինն է: Հեռագիրն ուղարկված է Կրասնովի՝ Դոնի կազակական բանակի դեմ կարմիր զորքերի սկսած վճռական հարձակման շրջանում: Հեռագրի մեջ հիշատակված՝ Բոյցորոդի գրավումը կրասնովականների կողմից, կարճ ժամանակյա բնույթ ուներ: Արդեն հունվարի յերկրորդ կեսում Կրասնովի ջոկատները չտալ նա-

հանձնում էին ամբողջ ճակատով, Կասպիական ծովում գործող անգլիական նավատորմը, որի մասին նույնպես խոսվում է հեռագրի մեջ, հենվում է Բաքվի վրա, որն օկուպացիայի յեր յենթարկվել անգլիական իմպերիալիստների կողմից 1918 թվի յերկրորդ կիսում: Բաքվում անգլիացիները մնացին մինչև 1920 թվի մայիսը:

1919 թվի հունիսի 9-ին Արևելյան ճակատի Ռազմհեղխորհրդին ուղարկված հեռագիրը, որը մատնանշում է Արևելյան ճակատի խնդիրները Կոլչակի դեմ մղած պայքարում, և ընդգծում է զորքի մի մասը մյուս ճակատները փոխադրելու անհրաժեշտությունը, գրված է Պետրոգրադի վրա Յուդենիչի ամառային հարձակման, և Միլերովոյի շրջանում դենիկինականների կողմից մեր հարավային ճակատը ճեղքելու ժամանակ: Արևելյան ճակատում ռազմական գործողությունները կարմիր զորքերի համար բարենպաստ էին զարգանում և հենց հունիսի 9-ին, հեռագիրն ուղարկելու օրը, մենք գրավեցինք Ուֆան:

1919 թվի հոկտեմբերի 18-ին Ֆրունզեյին ուղարկված հեռագիրը գրված է Արևելյան ճակատում, Կոլչակի դեմ մղված պայքարում, մեր տարած վճռական հաջո-



ղությունների շրջանում: Հոկտեմբերի 14-ին սկսվեց կարմիր բանակների նոր հարձակումը, որը վերջնականապես ջախջախեց կոլչակականների ընդդիմադրությունը: Ֆրունզեն այդ ժամանակ գործում էր Ուրալի և Օրենբուրգի մարզերի շրջանում:

1920 թվի նոյեմբերի 13-ին ընկեր Ստալինին ուղղված հեռագիրն ուղարկված է այն ժամանակ, յերբ Ստալինը գտնվում էր Կովկասում, Թեմիր-Խան-Շուրայում (Բույնակսկ), որտեղ նա յեկել էր Բաքվից, Դաղստանի ժողովուրդների համագումարին մասնակցելու համար: Ընկեր Ստալինը Կովկասում ղեկավարում էր դեռևս մնացած սպիտակ գվարդիական ջոկատների լիկվիդացիան:

1922 թվի մարտի 18-ին Արդարադատության ժողկոմ Կուրսկուն ուղղված նամակը գրելու առիթ ծառայեցին այն այլանդակությունները, որոնք հայտնաբերվել էին Սախարոտրեստում: Նամակում Լենինը պահանջում է «Անողոք դատաստան» տեսնել մեղավորների հետ:

Քաղբյուրոյին ուղարկված յերկտողը Վլադիմիր Իլյիչը գրել է 1922 թվի հոկտեմբերի 6-ին: Լենինը դեռ նոր էր (հոկտեմբերի 2-ին) աշխատանքի անցել, հիվան-

դության առաջին նոպաներից (պրիստուպ) ապաքինվելուց հետո: Յերկտողը գըրված է Միութենական սահմանադրության Հանձնաժողովի զեկուցումը Քաղբյուրոյում քննարկելու առնչությամբ: Լենինը, որի ատամն այդ ժամանակ ցավում էր, այդ մասին նա հիշում է յերկտողում (Վլադիմիր Իլյիչն առհասարակ իրեն վատառողջ էր զգում այդ ժամանակ), նիստին ներկա չէր:

Վլադիմիր Իլյիչի անկետան ինքը լրացրել է 1922 թվի փետրվարի 13-ին, մեր կուսակցության անդամների այդ ժամանակ տեղի ունեցած համառուսական ցուցակագրության առնչությամբ:

ՀԱՄ Կ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՄԱՐՔՍԻ—ԷՆԳԵԼՍԻ—ԼԵՆԻՆԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ



## ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՌԱԶՄԽՈՐՀՐԴԻՆ

(1919 թ. հունվարի 2 կամ 3-ին)

Կովկասյան ճակատի շտաբի պետի № 4873 օպերատիվ ամփոփագրից յերևում է, որ կրասնովականները գրավել են Ռայգորոդը Վոլգայի ափին, Սարեպտայից դեպի հարավ, սպառնալով, առաջին, Վլադիմիրովկայից դեպի Ցարիցին գնացող մեր ռազմական բեռներին, յերկրորդ՝ Աստրախան—Սարատով գծի ամբողջությանը: Խնդրում ենք միջոցներ ձեռք առնել: Նույն օպերատիվ ամփոփագրից յերևում է, որ չորս նավերից բաղկացած անգլիական նավատորմը գնդակոծել է Ստարոտերեչնին, Աստրախանից դեպի հարավ, այրել մեր յերկու բարժերը և անվնաս գնացել դեպի ծովը, հափշտակելով մեր հիվանդանոցային «Ալեսկեր» նավը, բժշկական անձնակազմով: Ո՞րտեղ է մեր նավատորմը և ինչ է անում նա: 120:

Ժողկոմխորհի նախագահ ԼԵՆԻՆ

## ՀԵՌԱԳԻՐ Մ. Վ. ՖՐՈՒՆԶԵՅԻՆ

18 *հոկտեմբերի* 1919 *թ.*

*Թուրքֆրոնտի Ռազմհեղխորհրդին*

ՖՐՈՒՆԶԵ.

*Ամբողջ ուշադրությունը դարձրեք ո՛չ թե Թուրքեստանին, այլ Ուրալի կողմների լիակատար լիկվիդացիային, բոլոր յեղանակներով, թեկուզ և դիվանագիտական միջոցներով: Ամբողջ ուժով արագացրեք հարավային ճակատին օգնելը: Արդյոք չի՞ կարելի Օրենբուրգի կազակներին տանել Պիտերի մոտ կամ այլ ճակատ: Ավելի հաճախակի տեղեկացրեք փաստական կատարման մասին* (127):

ԼԵՆԻՆ



## ՀԵՌԱԳԻՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻՆ

(13–*նոյեմբերի* 1920 *թվի*)

ՍՏԱԼԻՆԻՆ

*Ի՞նչպես է ընթանում բանդաների դեմ մղվող պայքարը: Ճի՞շտ է, որ նրանք ավելի քան քսան հազար սվին ու սուր ունեն: Բավակա՞ն են արդյոք Կովկասյան ճակատի համար նշանակված օժանդակ ուժերը: Հնարավոր համարո՞ւմ եք հարաբերությունների խաղաղ կարգավորումը Վըրաստանի ու Հայաստանի հետ և ինչ հիման վրա: Այնուհետև, միանգամայն լուրջ աշխատանքներ կատարվո՞ւմ են Բաքվի մատույցների ամրապնդելու համար: Նմանապես հաղորդագրություններ եմ խնդրում Թյուրքիայի և Պարսկաստանի մասին, հակիրճ՝ հեռագրով, ավելի մանրամասն՝ նամակով* (574):

ԼԵՆԻՆ

## ՆԱՄԱԿ Դ. Ի. ԿՈՒՐՍԿՈՒՆ

18 մարտի 1922 թ.

Ընկեր Կուրսկի:

Ընկեր Ցյուրուպան նամակ ուղարկեց Ձեզ Սախ[արո] տրեստի վերաբերյալ:

Խնդրում եմ ամենալուրջ ուշադրություն դարձնել այդ գործին:

Նշանակեցեք լավագույն աշխատողի:

Ստուգեցեք անձամբ:

Առավելագույն յեռանդ և խստություն:

Մեր պետական տրեստներում շատ այլանդակություններ կան: Ցեվ ամենավատ այլանդակություն արողները, դատարկապորտները, ավարանները, այդ—«բարեխիղճ» կոմունիստներն են, վորոնք թույլ են տալիս, վոր բարեխղճորեն իրենց ձեռ առնեն:

Արդժ[ող]կ[ոմատը] Հեղափոխին առաջին հերթին պատասխանատու յեն այդ ավարաների և սրիկա դվարդխականների հետ անողոք դատաստան տեսնելու համար, վորոնք խաղ են անում նրանց հետ:

Կոմբարևներով · ԼԵՆԻՆ



## ՑԵՐԿՏՈՂ ՔԱՂԲՅՈՒՐՈՅԻՆ

(6 հոկտեմբերի 1922 թ.)

Վելիկոռուսական շովինիզմին կենաց և մահու կռիվ եմ հայտարարում հենց վոր ազատվեմ անիծյալ ատամից, այն կուտեմ բոլոր առողջ ատամներովս.

Պետք է աբսոլյուտ կերպով պնդել վորպեսզի Միութենական ՎՑԻԿ-ում նախագահեն հերթով

Ռուս

Ուկրայինացի

Վրացի և այլն

Աբսոլյուտ կերպով:

ՁԵՐ ԼԵՆԻՆ

Ճիշտ է

Ի. ՍՏԱԼԻՆ

# ԼԵՆԻՆԻ ՀԱՐՑԱԹԵՐԹԸ (ԱՆԿԵՏԱՆ)

13 փետրվարի 1922 թ.

| Ռ. Կ. Կ. Կ. վիճակագրական բաժին Բլանկ «Ա» № 38 | Ռուսաստանի Կոմուն. կուսակցության (բ-ների) անդամների 1922 թվի Համառուսական ցուցակագրություն | Պրոլետարներ բոլոր յերկրների, միացեք. |
|---|---|---|

1. Բջիջի վայրը — Քաղ. / Շրջան: Մոսկվա — Գավառ — Գյուղա-խումբ — Զամառ-յան — Նահ. / Մարզ — Կրեմլ(ի) Տեղ(ա-մաս) № 1

2. Ձեռնարկության (հիմնարկի, զորամասի) անունը, վորին կից կազմակերպված է օջիջը Ժողկոմխորհ Կուստոմս 224.332.

3. Տոմսը տված կուսկազմակերպության անունը Զամոսկվորեչյե.

4. Ազգանունը Ուլյանով (Լենին), 5. Անուն և հայրանունը Վլադիմիր Իլիչ.

6. սեռը Ա. 7. Տարիքը՝ ծնվել եմ 1870 թվին. լրացած տարիների թիվը 52:

8. Խոսակցական լեզուն ռուսերեն, 9. Դրանից բացի ինչ լեզուներով եք ազատ խոսում: Ազատ վո՛չ մի լեզվով:

10. ա) կրոնական վոբեւ հավատալիք (համոզմունք) ունե՞ք (այո, վոչ), հատկապես ինչ՝ վոչ:

բ) Յեթե դուք անհայտ եք, ապա վոր հասակից՝ 16 տարեկան հասակից:

11. Հարցաթերթը լրացնողի ընտանիքի անդամների թիվը (չհաշված իրեն)

Խնամքի տակ գտնվողներ՝ յերկուսը.

Աշխատողներ՝ յերկուսը

12, Կրթությունը, ա) Գրագե՞տ եք (այո, վոչ) ա ո,

բ) Յեթե սովորել եք կամ սովորում եք, ապա ցույց տվեք.—

Այլուսակ I Կ ր թ ա կ ա ն ց ե ն զ ը

| Ուսումնական հաստատության տիպը (Ցերեկային, գիշերային, շաբաթային, քաղաքային, պրոֆ-տեխնիկ. դպրոց, ավագ-գործի յերեկոյան դասընթացներ, ավիացիոն դասընթացներ, գիմնազիա, համալսարան, կուս դպրոց): Արտադպրոցական կրթությունը նշվում է «ինքնուս», «ընտանեկան» բառերով: | Քանի տարի յեք սովորել | Ավարտե՞լ եք դպրոցը (այո, վոչ, դուրս եմ յեկել այսինչ դասարանից, սովորում եմ) |
|---|---|---|
| 13. | 14 | 15 |
| ա) ավարտել եմ կլասիկ (կլական) գիմնազիա 1887 թվ. բ) յեվ իրավ/արաձական) ֆակուլտետի համալսա- գ) բանական ավարտական քննությունը եմ տվել եքստերն կարգով 1891 թվին: | 8 տարի գիմնազիայում | Գիմնազիան ավարտել եմ. համալսարանական ավարտական քննությունը տվել եմ էքստերն կարգով |

16. Եթե սովորելու ցանկություն ունեք, ապա հատկապես ինչ (գրագիտություն, գիտություններ, արվեստներ, արհեստներ—հատկապես վորոնք).—

Աղյուսակ II· Սոցիալական յեվ ազգային ծագումը

| Կապը հարցաթերթիկը լրացնողի հետ | Հիմնական պրոֆեսիան կամ զբաղմունքը, պաշտոնը, աստիճանը | Դրությունը գործի մեջ (վարձու բանվոր ունեցող տնտեսատեր, միայնակ-տնտեսատեր, վարձու բանվոր, «ազատ» պրոֆեսիայի մարդ, տնատեր, տնային տնտեսուհի) | Ազգությունը |
|---|---|---|---|
| 17 | 18 | 19 | 20 |
| 1· Պապը (հոր կողմից) | չգիտեմ ժողո (վրդական) | | |
| 2. Հայրը | դպր (ոցների, | | |
| 3. Մայրը | դիր (եկտոր) | | |

21. Ո՞ր հասակից եք ձեր աշխատանքով ապրում. 27 տարեկանից (մասա (վոբայեա). վարձով կամ ձեր տնտեսության մեջ (ընդգծեցեք). գրականագետ.

22. ա) Հիմնական պրոֆեսիան ու մասնագիտությունը մինչև 1917 թիվը· գրականագետ:

բ) Քանի՞ տարի յեք աշխատել այդ պրոֆեսիայով մոտ(րկ)20 (1897—1917

23. Գոյության միջոցների հիմնական աղբյուրը մինչև 1914 թիվը,— գրա(կան) աշխատանքը յեվ ռանիկը կուսակցությունից, 1914—1917 թվին նույնպես:

Աղյուսակ III Բանվորական յեվ ծառայության ստաժը 1917 թվից մինչեվ հարցաթերթը լրացնելս

| Աշխատանքի շրջանը | | Աշխատանքի վայրը: Ձեռնարկության (հիմնարկի, զորամասի) անունը, վորտեղ աշխատել և վոչ պակաս քան 3 ամիս և վորտեղ աշխատում և ներկա մոմենտում | Քաղաքը կամ նահանգը | Զբաղմունքի տեսակը | Վարձու, ընտրովի, նշանակովի | Աշխատանքի տևողությունը: Վոր ժամանակվանից մինչև վոր ժամանակը: ամիս տարի | ամիս տարի | Աշխատանքի գումարը: տարի | ամիս |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 24 | | 25 | 26 | 27 | 28 | 29 | 30 | 31 | 32 |
| Ա. 1917 թվից մինչև ներկա աշխատանքի անցնելը | | ա.<br>բ.<br>գ.<br>դ.<br>ե. | | | | | | | |
| Բ. Հարցաթերթը լրացնելու մոմենտին | | ա) 1917-ի X-ից Ժ.Կ.Խ.-ի նախ(ագահ) | Մոսկվա | | նշանակովի | 1917-ի X-ի 25-ից | | 4 | 3 |

33. Վերջին ամսվա աշխատավարձը (դրամական)։ տարիֆային կարգը 17, հիմնական գրույքն ռուբլ. ամբողջ աշխատավարձը 4, 700,000 ռու. ։ի. *)

Աղյուսակ IV. կուսակցական ստաժը

| Կուսակցության և ֆրակցիայի անունը | Դրությունը կազմակերպության մեջ («պրոֆեսիոնալ», կուսկոմի անդամ, կուսկոմի քարտուղար, կազմակերպիչ, ագիտատոր, պրոպագանդիստ, մարտիկ, տեխնիկ, շարքային անդամ) | Աշխատանքի վայրը (քաղաք, նահանգ) | Կուսակցության մեջ գտնվելու ժամանակ | | |
|---|---|---|---|---|---|
| | | | Մտել եմ (տարի ամիս) | Դուրս եմ յեկել (տարի, ամիս) | Կուսակցության մեջ գտնվելու ընդհանուր տևողությունը (տարիներով և ամիսներով) |
| 34 | 35 | 36 | 37 | 38 | 39 |
| ՌՍԴԲԿ(բ) | Պրոֆեսիոնալ ԿԿ-ի անդամ | Մոսկվա | 1895 (փաստական) | — | Մոտ 27 տարի |

*) Այդ տարիներին խորհրդային ռուբլին կայունացված չեր։ Այդ ժամանակ աշխատավարձը հաշվական թվերի յեր հասնում։

V Աղյուսակ. հեղափոխական ստաժը

| Մասնակցությունը | դեպքերի թիվը |
|---|---|
| 40 | |
| 1. Տնտեսական գործադուլներին | — |
| 2. Քաղաքական » Ընդամենը | — |
| 3. Փողոցային քաղաքական ցույցերին | — |
| 4. Ուսանողական շարժումներին | (1887) |
| 5. Ընդհատակյա խմբակներին | շատ |
| 6. Անլեգալ մասսովկաներին և միտինգներին | » |
| 7. Մայովկաներին | — |
| 8. Զինված ապստամբություններին և պարտիզանական կռիվներին | |
| 9. Կուսակցական կոնֆերենցիաներին | համարյա |
| 10. Կուսակցական համագումարներին | բոլորին |

42. Բանտային ստաժը.— ա) Բանտ և նստել 1 տարի 2 ամիս. վարչական կարգով աքսորվել և 3 տարի — ամիս. բնակության — տարի — ամիս, քաղխմբագրությունում մոտ (ից) 10 տարի, ամիս. կատարած փախուստների թիվը.—

43. ա) Ինչ թերթեր ու ժուռնալներ եք կարդացել 1921 թվին (նշտագրեցեք) զանազան:

բ) Կանոնավոր կերպով, պատահականորեն, յերբեք, անկանոն:

digitised by A.R.A.R.@

գ) Ցեթե յերբեք չեք կարդում, ապա ինչու (թերթեր չկան, ժամանակ չկա, հետաքրքրություն չկա)—

դ) Ցեթե կարդում եք, ապա վորտեղ (տանը, ծառայության, գրադարանում, ընթերցարանում, պատերին) տանը:

44. ա) Վոր թվից եք պրոֆմիության անդամ, 19 . . . թվից:

բ) Ներկայումս մասնակցություն ունենում եք պրոֆաշխատանքի (այո, վոչ), վոչ:

գ) Ցեթե ունենում եք, ապա ինչպես.—

VI Աղյուսակ զինվորական ծառայողի և քաղաքական կոմիսարի զինվորական ստաժը

| Վոր բանակում | Զենքի տեսակը և մասնագիտությունը (հետևակ, հեծյալ, հրետանի, սակրավոր, ինժեներական գործ) | Նախկին զինվորական կոչումն ու աստիճանը (շարքային, վաշտի հրամանատար) | Ծառայութ. տևողությունը: Վոր ժամանակվանից մինչև վոր ժամանակը: Ամիս տարի | Ամիս տարի | Ծառայության գումարը: Տարի ամիս | | Վերքերի թիվը: Մասնակցության: Հրաձգութ. մեջ և այլն | Ձեռնամարտում | Վիրավորումներ: Հրազենով | Սառը զենքով | Զինվորական պարգևներ ստացել |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 45 | 46 | 47 | 48 | 49 | 50 | 51 | 52 | 53 | 54 | 55 | 56 |
| 1. Ծարական բանակում | Վոչ | | | | | | | | | | |
| 2. Սպիտակ բանակում | | | | | | | | | | | |
| 3. Կանաչների բանակում | | | | | | | | | | | |
| 4. Կարմիր բանակում | | | | | | | | | | | |

57. Եթե զինվորական ծառայության մեջ չեք յեղել, ապա ընդհանուր վարժություն անցել եք (այո, վոչ) վոչ։

58. Ե՞րբ եք զորացրվել — ամիսը 19 — թվի —

59. ա) Եթե դուք քաղաքացի կամ բանվոր եք, ապա վորևէ կապ պահպանո՞ւմ եք գյուղի հետ (այո, վոչ) —

բ) Հատկապես ինչպիսի (ունեք ձեր, կամ ուրիշների հետ համատեղ դաշտավարական, բանջարանոցային տնտեսություն, մեղվանոցը և այլն) —

գ) Ինչո՞վ է արտահայտվում ձեր մասնակցությունը այդ տնտեսությանը (անձնական աշխատանք, դրամական օժանդակություն)—

Ծանոթություններ

Վ. ՈՒԼՅԱՆՈՎ (ԼԵՆԻՆ)

քաղաք Մոսկվա

13 փետրվարի, ամիս, 1922 թ.



ՀԿ(բ)Կ Կ Կ հրատարակչություն—«Խորհրդային Հայաստան»

---

# ԲԱՑՎԱԾ Է 1938 Թ.

բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուսպրոպագանդայի, ագիտացիայի և մամուլի բաժնի հրատարակություն

ԲԱԺՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . . 6 ռուբ.
6 » . . 3 »
3 » . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝ «Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին։